ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԿԻՑ ՊԵՏԱԿԱՆ ՁԵՌԱԳՐԱՏՈՒՆ
(ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ)
ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ
ԵՐԵՎԱՆ № 4 1958

Ա. ՂԱՆԱԼԱՆՅԱՆ

# ՀԱՅԿԱԿԱՆ ԱՌԱԾՆԵՐԻ ՀՆԱԳՈՒՅՆ ԳՐԱՎՈՐ ՍԿԶԲՆԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

*Ինչպես ուրիշ երկրներում, այնպես էլ Հայաստանում, բանավոր ձևով ստեղծված առածների ու ասացվածքների հետ միասին, որոնք կազմել են ժողովրդի ավանդական բանահյուսության տվյալ ժանրի հիմնական հարստությունը, գոյություն են ունեցել նաև գրավոր աղբյուրներից առաջ եկած առածներ ու ասացվածքներ։ Դրանց համար հիմք են ծառայել տարբեր դարերի աշխարհիկ ու կրոնական, պատմական ու փիլիսոփայական, հրապարակախոսական ու գեղարվեստական զանազան գրական հուշարձանների (թե՛ ինքնուրույն և թե՛ թարգմանական) մեջ առկա բազմաթիվ իմաստալից ասույթներ, պատկերավոր արտահայտություններ կամ աֆորիզմներ, որոնք տարբեր ուղիներով ու ձևերով մուտք գործելով բանավոր ավանդության մեջ և ձեռք բերելով բանահյուսական գույն ու երանգ, ժամանակի ընթացքում դարձել են ժողովրդական առածներ ու ասացվածքներ։*

*Գրավոր ասույթների ու աֆորիզմների ներթափանցումը ժողովրդական բառ ու բանի մեջ, ընդհանրապես, ստեղծագործական բավական բարդ մի երևույթ է։ Այն տեղի է ունենում երկար ժամանակի ընթացքում, միջնորդավոր զանազան օղակներով։ Այդ երևույթը սերտորեն կապված է տվյալ ժողովրդի ապրած միջավայրի, նրա պատմական ճակատագրի, ուրիշ ժողովուրդների հետ ունեցած քաղաքական, կուլտուրական շփման ու հարաբերությունների հետ։*

*Ժողովրդի մեջ սովորաբար ընդունելություն են գտնում ու տարածվում են այնպիսի գրավոր ասույթներ կամ աֆորիզմներ, որոնք իրենց բովանդակությամբ հարազատ ու համահունչ են լինում նրա մեծամասնության աշխարհայացքին ու աշխարհազգացողությանը, ճաշակին ու հոգեբանությանը, այնպիսի գրավոր ասույթներ կամ աֆորիզմներ, որոնք իրենց ատաղձով ու ակունքներով, ավել կամ պակաս չափով, կապված են լինում բանավոր խոսքի ավանդների հետ։*

*Դրա հետ միասին գրավոր աղբյուրներից հասարակական լայն շրջանների մեջ երբեմն թափանցում են նաև այնպիսի ասույթներ կամ աֆորիզմներ, որոնք դրսևորում են տիրապետող գաղափարախոսության ազդեցությունը և ժողովրդի որոշ շերտերի աշխարհայացքի դասակարգային ու պատմական սահմանափակությունը։*

*Հայաստանում հայտնի հնագույն գրավոր հուշարձաններից ժողովրդական առած-ասացվածքների համար նյութ են մատակարարել միջազգային բնույթի երեք հուշարձան, որոնք չնայած իրենց օտար ծագմանը, պատմական դեպքերի բերումով, տարածում ու ընդունելություն են գտել մեզանում։*

Այդ հուշարձաններից առաջինը Աստվածաշունչն է իր Հին ու Նոր կտակարաններով։

Տասնյակ դարերի ընթացքում ստեղծված, մշակված ու խմբագրված մի գիրք է դա, որն արտացոլում է իր մեջ վաղնջական ժամանակների ժողովրդական առասպելների, ավանդությունների ու կրոնական սխեմների բազմադան շերտավորումները։ Քրիստոնեական միֆոլոգիայի այդ հանրագիտարանը հարուստ նյութ է տալիս հնագույն մի քանի ժողովուրդների, մասնավորապես հին եբրայեցիների, կյանքի ու կենցաղի, տնտեսական, քաղաքական հարաբերությունների, փիլիսոփայական հայացքների, իրավական նորմերի, հավատալիքների, վիպական ու քնարական ստեղծագործությունների վերաբերյալ։ Հին կտակարանը, ուր վերարտադրված են հրեական ժողովրդի հնավոր անցյալի դեպքերն ու դեմքերը, աչքի է ընկնում իր գերազանցապես աշխարհիկ բովանդակությամբ։ Նոր կտակարանի համար, որը կապված է քրիստոնեության առաջին շրջանի անց ու դարձերի հետ, ավելի բնորոշ են կրոնա-բարոյախոսական մոտիվները։

Հանդիսանալով աշխարհի հնագույն ու տարածված գրավոր հուշարձաններից մեկը, Աստվածաշունչը դարեր շարունակ նշանակալից դեր է խաղացել քրիստոնեությունն ընդունած բազմաթիվ ժողովուրդների հոգևոր կյանքում, յուրովի ազդելով նրանց կրոնական հայացքների, ավանդական բանահյուսության, բարոյագիտական ու գեղագիտական ըմբռնումների, լեզվի ու գրականության վրա։

Անուրանալի է Աստվածաշնչի դերը նաև հայ ժողովրդի կյանքում։ Թարգմանվելով հայերենի դեռևս 5-րդ դարում, Սահակի, Մաշտոցի ու սրանց ավագ աշակերտների ձեռքով, Աստվածաշունչը քրիստոնեական կրոնի քարոզի հետ զուգընթաց մեծապես ծառայել է նաև լուսավորության և ուսման տարածման գործին։ Նրա միջոցով Մաշտոցն ու իր բազմաթիվ աշակերտները դպրոցներ և ուսումնական տարածել Հայաստանում։

Շնորհիվ իր բազմակողմանի ու հարուստ բովանդակության, պարունակած հետաքրքիր և միաժամանակ պարզ ու մատչելի զրույցների, պատմվածքների, առակների ու երգերի, Աստվածաշունչը երկար դարերի ընթացքում տարածված գիրք է եղել Հայաստանում։

Աստվածաշնչի և մասնավորապես Ավետարանի մասին հայ ժողովրդի մեջ այն կարծիքն է եղել, որ դա իր տեսակի մեջ բացառիկ մի ստեղծագործություն է. «Գիրք շատ կա, ամմա մինն էլ Ավետարանին տեղը բռնիլ չի»— ասել են ղարաբաղցի հայերը, ընդգծելով այն առավելությունը, որ ունեցել է նրանց աչքում Ավետարանը։ «Ավետարանի կուզկեմեն է խոսում»,— ասել են թիֆլիսեցի հայերը, երբ ուզեցել են ակնարկել մեկի ճշմարտախոս լինելը։ Մի քանի ուրիշ վայրերում՝ ճշմարտության, իմաստության, ավետիք, բարի համբավ հայտնող մարդու համար ասել են. «Բերան չէ, Ավետարան է»։ Շատ սովորական ու տարածված է եղել Հայաստանում «Ավետարանի կողին դրած խոսք» արտահայտությունը՝ անսուտ խոսք իմաստով[1]։

Աստվածաշունչն իր բաղկացուցիչ մասերով (Հին ու Նոր կտակարաններ, Ավետարան) Հայաստանում տարածվել է նախ հարյուրավոր գրչագիր օրինակ-

[1] Գ. Բարխուդարյան, Բարոյական առածներ, Տփխիս, 1898, էջ 12։
Գ. Տեր-Աղեքսանդրյան, Թիֆլիսեցոց մտավոր կյանքը, Թիֆլիս, 1885, էջ 79։
Ստ. Մալխասյանց, Հայերեն բացատրական բառարան, հ. Ա., Երևան, 1944, էջ 295։

ներով, իսկ ապա (տպագրական գյուտից հետո) տասնյակ գրաբար ու աշխարհաբար հրատարակություններով, որոնք լույս են տեսել զանազան ժամանակ, զանազան վայրերում:

Պատերազմի, գաղթի, տեղահանության և առհասարակ որևէ աղետի (հրդեհ, հեղեղ և այլն) ժամանակ, Հայաստանի բնակիչների առաջին հոգսերից մեկը եղել է փրկել իրենց տան Աստվածաշունչը կամ Ավետարանը: Ժողովուրդը բերնե-բերան և սերնդից-սերունդ հաղորդել է այն աննկուն ջանքերի մասին, որ գործադրել են նրա զավակները՝ թշնամու կողմից գերված Ավետարանն ազատագրելու համար:

Աստվածաշնչի ազդեցությամբ հնուց Հայաստանում ստեղծվել ու պատմվել են բազմաթիվ ժողովրդական ավանդություններ ու զրույցներ՝ Ադամի ու Եվայի, Նոյան տապանի ու ջրհեղեղի, Կայենի ու Աբելի, Ոռնանու կալի, Հոբ Երանելու, Եղիա մարգարեի, Դավիթ թագավորի, Մարիամի ու Հովսեփի, Քրիստոսի ու նրա առաքյալների հրաշագործությունների մասին և ուրիշ նմաններ: Այդ ավանդություններից ու զրույցներից շատերը կապվելով Հայաստանի աշխարհագրական միջավայրի, ժողովրդի կենցաղի, հոգեբանության, նրա կյանքում տեղի ունեցած պատմական անց ու դարձերի հետ, ձեռք են բերել տեղային յուրահատուկ գծեր:

Նույն ճանապարհով հայ ժողովրդի մեջ մուտք են գործել, տեղայնացվել, նրա բառ ու բանի հետ համադրվել ու ձուլվել են նաև հնագույն մի քանի ժողովուրդների բանահյուսությունից սերող աստվածաշնչյան բազմաթիվ պատգամներ ու թևավոր խոսքեր:

Դրան նպաստել է, նախ և առաջ, այն հանգամանքը, որ և՛ Աստվածաշնչի և՛ Ավետարանի լեզուն եղել է ո՛չ թե մեր որոշ մատյաններին հատուկ խրթին գրաբարը, այլ բավական պարզ ու հասկանալի գրավոր մի լեզու, որը քիչ է տարբերվել ժամանակի ընդհանուր խոսակցական լեզվից:

Պակաս կարևոր դեր չի խաղացել նաև այն հանգամանքը, որ հիշյալ հուշարձանները եղել են այն եզակի գրքերը, որոնք ընթերցվել են ոչ թե մի անգամ, այլ եկեղեցու միջոցով դարեր շարունակ պրոպագանդվել են հասարակական լայն շրջանների մեջ:

Հին կտակարանից ծագումն առած հայկական առածների ու ասացվածքների մեջ աչքի են ընկնում գլխավորապես մարդկային-հասարակական և կենցաղային հարաբերություններին ու երևույթներին վերաբերող հիմնականում աշխարհիկ բնույթի ստեղծագործություններ: Դրանց համար հիմք են հանդիսացել զանազան մարգարեների ու առաքյալների պատգամները, Սիրաքի առածները և հատկապես Սողոմոնի հռչակավոր առակները, որոնց հեղինակը մեզանում համարվել է խելքի ու իմաստության չափանիշ-օրինակ, նյութ դառնալով բազմաթիվ ժողովրդական զրույցների ու ավանդությունների:

Խելոք մարդուն բնութագրելու և նրա նկատմամբ իրենց ունեցած դրական վերաբերմունքը բացահայտելու համար, Հայաստանի տարբեր գավառների բնակիչներն ասել են. «Խելը (խելական) Սողոմոն իմաստունն է», «Սողոմոն իմաստունի խելքն ունի», «Սողոմոն իմաստունի քովեն կուգա» և այլն:

Սողոմոնին վերագրվող «առակ» կոչված այլաբանական խոսքերից, երբեմն նրանց ավանդական հեղինակի անվան հիշատակմամբ («Սողոմոն իմաստունն ասել է» և ուրիշ ձևերով), իսկ հաճախ էլ առանց դրան, մեզանում, իբրև ժողովրդական առածներ կամ ասացվածքներ, գործ են ածվել շատերը:

Այդպիսիներից մեկն է, օրինակ, «Վաւ է բարեկամ մերձաւոր, քան զեղբայր հեռաւոր»[1] առակը, որի իմաստն այն է թե՝ մարդկային հարաբերությունների մեջ հիմնականը ո՛չ թե արյունակցական կապն է, այլ հասարակական, կենցաղային մոտիկությունը, մտերմությունը:

Սրա ժողովրդական նմանակները Հայաստանում հայտնի են՝ «Մոտիկ հարևանը լավ ա, քանց հեռու բարեկամը», «Լավ դրկիցը գեշ բարեկամեն լավ է», «Սրտակից հարևանը անսիրտ ախպորից լավ ա» և նման ուրիշ ձևերով[2]:

Հայկական առածների շարքն անցած սողոմոնյան մի այլ առակ է՝ «Որ փորէ խորխորատ ընկերի իւրում՝ ինք յցցէ զնա»[3] բարոյախոսական խրատնախազգուշացումը՝ ուղղված չարագործ մարդկանց, որի նպատակն է դարձի բերել նրանց վատ ճանապարհից:

Սույն առակը մեզանում ապրում է ժողովրդական այս և նման տարբերակներով. «Ուրիշի հոր փորողը, ինքը կընկնի մեջը», «Հոր փորողը՝ ինքը կընկնի մեջը», «Իր ձեռքով հոր փորէ, ինքը գլիվեր ընգնի» և այլն[4]:

Սողոմոն իմաստունին վերագրված առակներից Հայաստանում տարածված է եղել նաև՝ «Վաւ է անուն բարի, քան զմեծութիւն բազում, եւ քան զարծաթ եւ զոսկի» առակը[5], ուր հակադրված են իրար լավ անունն ու ունեցվածքը՝ առաջինի նախապատվությամբ: Արտահայտելով «բարի անուն» ունեցող ընչազուրկ խավերի տրամադրությունները, այս առակը սիրով ընկալվել է մեր հասարակության լայն շրջաններում և ձեռք է բերել մեծ ժողովրդականություն: Այն Հայաստանում հայտնի է հետևյալ տարբերակներով. «Բարի անունը լավ ա, քանց աշխարհի գանձը», «Լավ ա անուն բարի, քան գանձ աշխարհի», «Անունը թանկ արժե, մալը ձեռքի կեղտ է», «Տուն ու տեղ սև փող չարժի, մարդիս անունն է գովելի» և այլն[6]:

Սողոմոնի առակներից, Սիրաքի ասույթներից և Հին կտակարանի մյուս գրքերից ծագած հայկական առած-ասացվածքներից են նաև հետևյալները. «Ունեւորին՝ շատ բարեկամ, չունեւորին՝ քիչ բարեկամ» ՀԱ[7], 7 (ըստ Հին կտակարանի՝ «Բարեկամք մեծատանց բազումք», Առակ, ԺԴ):

«Աշխարքի շինողն ու քանդողը լեզուն է», ՀԱ, 18 (ըստ Հին կտակարանի՝ «Մահ և կեանք ի ձեռս լեզուի», Առակ, ԺԸ):

«Հարուստին խոսքը անցուկ կըլլա, աղքատինը՝ մոռցուկ», ՀԱ, 7 (ըստ Հին կտակարանի՝ «Խօսեցաւ մեծատուն և ամենեքեան լռեցին», Սիրաք, ԺԳ):

«Ոտքով ընկնողը կելնա, լեզվով ընկնողը չելնա», ՀԱ, 18 (ըստ Հին կտակարանի՝ «Լաւ է յոտից գայթակղել՝ քան ի լեզուէ», Սիրաք, Ի):

«Խալիս (անխառն) ոսկին բովմը բըլլու կանի» (հայտնի դառնալ), ՀԱ, 46 (ըստ Հին կտակարանի ՝ «Ի հուր փորձի ոսկի», Սիրաք, Բ):

«Պապեր ժուռ (աղոխ) կերան, թոռներուն ակռեն հարվեցավ», «Հերերը ժուռ կերան, որդկերանց ատամն առավ», ՀԱ, 11 (ըստ Հին կտարականի՝ «Հարք աղոխ կերան և որդւոց ատամունք առան», Եզեկ., ԺԸ) և այլն:

---

1 Հին կտակարան, Առակք Սողոմոնի, գլուխ ԺԸ:
2 «Հայկական առածանի», 1951, էջ 8—9:
3 Հին կտակարան, Առակք Սողոմոնի, գլուխ ԻԶ:
4 «Հայկական առածանի», էջ 92:
5 Հին կտակարան, Առակք Սողոմոնի, գլուխ ԻԲ:
6 «Հայկական առածանի», էջ 126, 179:
7 ՀԱ—«Հայկական առածանի»:

Հին կտակարանի հետ միասին մեզանում ժողովրդական առածների ու ասացվածքների համար առատ նյութ է տվել նաև Նոր կտակարանը կամ Ավետարանը: Մատթեոս, Մարկոս, Ղուկաս և Հովհաննես ավետարանիչներին վերագրվող մի շարք այլաբանական և ուղղակի նշանակություն ունեցող արտահայտություններն ու ասույթները, իբրև «Ավետարանի կողին գրված» խոսքեր, երբեմն բառացի, երբեմն էլ փոփոխված ձևով, մտել են ժողովրդի մեջ և առածի կամ ասացվածքի կերպարանք ընդունելով ավանդվել բերանից-բերան ու սերնդից-սերունդ:

Անհրաժեշտ է, սակայն, նկատել, որ հակառակ Հին կտակարանյան առածասացվածքների, ուր գերիշխում է աշխարհիկ ոգին, Ավետարանից ծագած առածների ու ասացվածքների մեջ ավելի է զգալի կրոնա-բարոյախոսական տարրը, մի հանգամանք, որ բխում է հիշյալ երկու հուշարձանների բովանդակության առանձնահատկություններից:

Հայկական առածների շարքը ներթափանցած ավետարանական նմանօրինակ պատգամներից մեկն է՝ «Որ համբերեսցէ՝ ի սպառ՝ նա կեցցէ»[1] արտահայտությունը, տիպիկ քրիստոնեական մի բարոյախոսություն, որն ստեղծված է հասարակության ճնշված ու հալածված խավերին մխիթարելու, նրանց՝ հուսահատությունից և մանավանդ ընդվզումից հեռու պահելու համար: Մի բարոյախոսություն, որով եկեղեցու հայրերը դարեր շարունակ ձգտել են թմրեցնել աշխատավոր ժողովրդին հեռավոր ապագայի մշուշոտ անուրջով:

Այս պատգամը մեզանում տվել է՝ «Համբերությունը կյանք է», «Համբերե, որ համ բերե», «Համբերե օր բերանդ համ գա» և այլ վարիանտներով[2]:

Նույն տիպի ավետարանական մի պատգամ է նաև՝ «Հաւատք քո կեցուցին քեզ»[3] արտահայտությունը, որով քրիստոնեական եկեղեցին հորդորել է ժողովրդին հավատարիմ մնալու իր սկզբունքներին և կյանքում դժվարության հանդիպելիս՝ հենվելու հավատի վրա:

Այս պատգամի բանահյուսական խմբագրություններն են մեզանում՝ «Հավատ ունիս՝ շատ կապրիս» և «Անհավատ բանին մի հավատա» ասացվածքները[4]:

Վերոհիշյալ և նույն կարգի կրոնա-բարոյախոսական պատգամների հետ միասին, Ավետարանը նյութ է տվել նաև ոչ քիչ թվով աշխարհիկ բնույթի առածների ու ասացվածքների: Ահա մի քանի նմուշ դրանցից.

«Իրան աչքի գերանը թողած, ուրիշի չոփն է ման գալի», «Իրան աչքի գերանը չի տեսնում, խալխի աչքի մազն ա տեսնում», ՀԱ, 80 (ըստ Նոր կտակարանի՝ «Հան նախ զգերանդ յականէ քումմէ, եւ ապա հայեսցիս հանել զշիւղ յականէ եղբօր քոյ», Մատ., Է):

«Բերանը սրտին էվելցուկը կը զուրցէ», ՀԱ, 117 (ըստ Նոր կտակարանի՝ «Ի յաւելուածոյ սրտի խօսի բերան», Մատ., ԺԲ): «Ուղտը կուլ կուտան, մժղուկը կը քամեն», ՀԱ, 190 (ըստ Նոր կտակարանի՝ «զՄժղուկն քամէք և զուղտ կլանէք», Մատ. ԻԳ):

«Ծառն իր պտղեն կը ճանաչվի», ՀԱ, 129 (ըստ Նոր կտակարանի՝ «Ծառ ի պտղոյ իւրմէ ճանաչի», Ղու., Զ): «Վայի վերջը ուրախութին է», ՀԱ, 157 (ըստ Նոր կտակարանի» «Երանի որ լան այժմ, զի ծիծաղեսցին», Ղուկ., Զ) և այլն:

---

[1] Նոր կտակարան, Աւետարան ըստ Մատթէոսի, գլուխ Ժ:

[2] «Հայկական առածանի», էջ 106:

[3] Նոր կտակարան, Աւետարան ըստ Մատթէոսի, գլուխ ԺԸ:

[4] «Հայկական առածանի», էջ 152:

Աստվածաշնչից փոխ առնված իր առածների ու ասացվածքների մեջ՝ հայ ժողովուրդը ընդհանուր առմամբ հավատարիմ ու հարազատ է մնացել վերջիններիս հիմքն հանդիսացող ասույթների բովանդակությանն ու էական իմաստին, և խմբագրել ու փոխել է գլխավորապես դրանց ձևը (լեզուն, ոճը)։ Սակայն եղել են դեպքեր էլ, երբ նա երկբայությամբ ու քննադատությամբ վերաբերվելով «Ավետարանի կողքին գրված» այս կամ այն խոսքի գաղափարական բովանդակությանը, փոխել է այն, դնելով նրա մեջ նոր իմաստ ու ըմբռնում։

Այսպես, օրինակ, Աստվածաշնչյան «Աստուած ողորմած է» հայտնի արտահայտությունը[1], որը մեզանում տարածված է եղել «Աստված ողորմած է», «Աստուց մինձ, օղորմութինը շատ», «Աստոծ մեծ ա, ողորմությունը հազար» և այլ տարածված ձևերով[2], ունի նաև՝ «Աստված ողորմած է, բայցը անոթի կը մնա», «Աստված ողորմածը՝ խեղճ մարդը մոռցած է» այլիմաստ ձևերը[3], որոնց բովանդակությունը տրամագծորեն հակադիր է աստծու ողորմածության վերաբերյալ եղած կրոնական ըմբռնմանը և դրսևորում է աշխատավորական խավերի մեջ խմորվող աթեիստական տրամադրությունները։

Ոչ պակաս բնորոշ մի ուրիշ օրինակ է՝ «Աստված տրու և էգ տրար, բա վարդապետներին ո՞վ տրար»[4] ժողովրդական սրամիտ հարցում-ասացվածքը՝ հորինված Նոր կտակարանի՝ «Աստուած տրու և էգ տրար»[5] արտահայտության կապակցությամբ, որի մեջ բացահայտված է ժողովրդի բացասական վերաբերմունքը հոգևոր պաշտոնյաների նկատմամբ։

Նոր կտակարանից ծագող «Համբերությունը կյանք է» վերևում հիշված ասացվածքի հետ միասին, հայ ժողովուրդը ստեղծել ու գործ է ածել նաև «Ավելի համբերությունը իշի մարտիրոսության է»[6] ասացվածքը, որի մեջ դրսևորվել է սպառված համբերությամբ ժողովրդի մարդկանց ընդվզումը գործնական կյանքում իրեն չարդարացրած ավետարանական պատգամի դեմ։

Աստվածաշնչից հետո, հայկական առածների ու ասացվածքների համար կարևոր աղբյուր են հանդիսացել անտիկ աշխարհի նշանավոր իմաստասերներից՝ Արիստոտելի, Սոկրատի, Պլատոնի, Էպիկուրի, Դիոգինեսի և մյուսների ասույթները կամ աֆորիզմները, որոնք մեզանում հայտնի են եղել «արտաքնոց» կամ «Նախնի իմաստասիրաց» «բանք» ընդհանուր կոչումով («Բանք խրատականք», «բանք իմաստասիրաց», «բանք խրատուց» և այլն)։

Հիշյալ հեղինակների ամբողջական գործերի հետ միասին այդ «բանքերը» շատ վաղ շրջանում (5—6-րդ դարեր)[7] թարգմանվել են հայերեն և մեծ ու փոքր շարքերով, ձեռագրից-ձեռագիր ու դարից-դար անցնելով հասել են մինչև մեր օրերը[8]։

---

1 Հին կտակարան, Բ օրենք, գլուխ Դ։

2 «Հայկական առածանի», էջ 149։

3 Նույն տեղում, էջ 152։

4 Նույն տեղում, էջ 154։

5 Նոր կտակարան, Ավետարան ըստ Մարկոսի, գլուխ Ժ։

6 «Հայկական առածանի», էջ 106։

7 Հ. Հակովբոս, Վ. Տաշյան, Մատենագրական մանր ուսումնասիրություններ, մասն Ա, Վիեննա, 1895, էջ 213—218։

8 Միայն Երևանի Պետական Մատենադարանում այդ շարքերի թիվը 50-ից ավելի է։ Ըստ իրենց գրչության ժամանակի դրանք վերաբերում են 13—19-րդ դարերին։ Առանձնապես շատ են 17—18-րդ դարերի ձեռագրերը։

Քննության առարկա ստեղծագործությունները աչքի են ընկնում իրենց բազմազան ու հետաքրքիր բովանդակությամբ, արծարծած՝ հասարակական, քաղաքական, բարոյական, կենցաղային խնդիրներով (իշխանություն, օրենք, ունեցվածք, փող, իմաստություն, ուսում, բարեկամություն, արիություն, դաստիարակություն, պատիվ, փառք, բախտ, գեղեցկություն, կյանք, մահ)։ Նրանց մեջ սուր քննադատության է ենթարկված մարդկային ագահությունը, շողոքորթությունը, երեսպաշտությունը, խորամանկությունն ու նենգությունը, գովաբանված են ազնվությունն ու արդարությունը, շիտակությունն ու անաչառությունը և այլն։ Ունենալով սեղմ ծավալ, ժողովրդական բառ ու բանի հիշեցնող պատկերավոր ու աֆորիստական ձև, նրանք հեշտ ընկալվել ու արմատ են բռնել մարդկանց հիշողության մեջ։

Անտիկ աշխարհի իմաստասերների «Բանք»-երի հայ գրչագիր մատյաններում գրաված մեծ տեղը բացատրվում է նրանց բովանդակության ու ձևի նըշված հատկություններով։ Նույն այդ հատկությունների շնորհիվ էլ նրանք գրչագիր մատյաններից թափանցել են նաև ժողովրդական բանավոր խոսքի սահմանները, մտել հասարակական ավելի լայն շրջանների մեջ և բերանից-բերան ու սերնդից-սերունդ հաղորդվելով ու փոփոխվելով վեր են ածվել ժողովրդական առած-ասացվածքների։ Վերջիններիս մի շարք նմուշները մենք գտնում ենք Հայաստանի տարբեր շրջաններում և հայաբնակ զանազան վայրերում գրի առնված առածների մեջ։ Բերենք մի քանի օրինակ.

«Աղքատը հացի կարոտ է, հարուստը՝ ամեն բանի», ՀԱ, 7 (ըստ Արիստոտելի՝ «Աղքատութիւն բազում ընչից է կարօտ, իսկ ագահութիւն ամենայնի», Սոփ.[1], 24)։

«Լացացնողիդ կշտին կաց, ծիծաղացնողից փախ», կամ՝ «Նստիր էնոր կուշտ, որ լացու, մը նստիր էնոր կուշտ՝ որ խնդացու», ՀԱ, 127 (ըստ Պլուտարքոսի «Խնդող պարտ է ընդ՝ սրտմեցուցանելն, քան ընդ շոգմողելն», Սոփ., 42)։

«Իր դարդը (հարդը) չգիտցողը, ուրիշինը ո՞նց կիմանա». ՀԱ, 126 (ըստ նույնի՝ «Որ վասն անձին անբարի խորհի, այլում բարի ոչ կարէ խորհել», Սոփ., 9)։

«Ճղլղանից չեն վախենա, սուս ու փուսից կը վախենան». ՀԱ, 72 (ըստ Սոկրատի՝ «Ի լռելութենէն պարտ է առաւել երկնչել, քան թէ ի ձայնէն», Սոփ., 37)։

«Սրտանց բարեկամը սև օրվան համար ա» կամ «Բարեկամը նեղ օրին կը ճանչցվի». ՀԱ, 9 (ըստ Երինոսի՝ «Բժիշկ և բարեկամ զայն համարեա, որ ի նեղութեան օգնել կարեն», Սոփ., 50) և այլն։

Հայկական առածների ու ասացվածքների համար աղբյուր ծառայած մյուս հնագույն գրավոր հուշարձաններից, անհրաժեշտ է հիշատակել նաև Խիկար իմաստունի հայտնի «Պատմությունը», ուր նկարագրված է Ասորեստանի Սենեքերիմ արքայի նախարար ու դպիր՝ խորագետ ու բազմահմուտ Խիկարի կյանքը և բերված են նրա բազմաթիվ՝ կենսական, բարոյագիտական, կենցաղային ու այլ կարգի խրատները ուղղված իր որդեգիր Նաթանին։ Կրելով իր վրա ավան-

[1] Այս և հաջորդ «Բանք»-երը բերում ենք «Սոփերք հայկականք»-ի Ա. գրքից (1853 թ. Վենետիկ), ուր «Բանք իմաստից նախնի իմաստասիրաց» ընդհանուր վերնագրի տակ տպագրված են բազմաթիվ այդպիսի «Բանքեր» (էջ 9—70), որոնք քաղված են «հինգ և ավելի» գրչագիր մատյաններից։

դական բանահյուսության անժխտելի կնիքը, գրավոր այս հուշարձանը իր մի շարք մոտիվներով սերտորեն կապված է Հին ու Նոր կտակարանների հետ։ Ակնհայտ ու անհերքելի է հատկապես Խիկարի խրատների և Հին ու Նոր կտակարանների մեջ առկա առակների նմանությունը։ Որոշ առնչակցություն է նկատված նաև Խիկարի «Պատմության» և «Հազար ու մեկ գիշերներ» հայտնի հեքիաթաշարքի մեջ։

Նախ Արևելքում, ապա նաև եվրոպական ազգերի մոտ լայն տարածում գտած այս երկը շատ հնուց ժողովրդականություն է վայելել նաև Հայաստանում։ Թեև մինչև այժմ չի պարզված Խիկարի «Պատմության» հայերեն թարգմանության թվականը, բայց այն ընդհանուր առմամբ համարվում է մի հին բնագրի (ասորի կամ հույն) թարգմանություն, հար և նման հայերեն ուրիշ շատ հին թարգմանությունների[1]։

Խիկար իմաստունի «Պատմության» Հայաստանում վայելած մեծ ժողովրդականության մասին են վկայում աշխարհի զանազան մատենադարաններում գտնված նրա բազմաթիվ հայերեն գրչագիր օրինակները և մասնավորապես Երևանի Պետական Մատենադարանում պահպանված նրա մի քանի տասնյակ ձեռագրերը՝ «Խրատք Խիկարայ իմաստնոյ, զոր ետ քրոջ որդոյն իւրոյ Նաթանայ» և ուրիշ վերնագրերի տակ, որոնք վերաբերում են 14, 17, 18 և 19-րդ դարերին։

Այդ են վկայում նաև Խիկարի «Պատմության» մի շարք հայերեն հրատարակությունները՝ լույս տեսած զանազան ժամանակ (1708, 1731, 1792, 1820, 1834, 1857, 1898 թթ.) զանազան վայրերում (Պոլիս, Թիֆլիս, Լոնդոն)։

Հարուստ ու բազմազան է Խիկար իմաստունին վերագրված խրատների բովանդակությունը։ Նրանց մեջ սրամտորեն մերկացված է մասնավոր սեփականատիրական կարգերում իշխող հասարակական կարծիքի դասակարգային աչառու ու կողմնակալ բնույթը, դատապարտված են կռվարար ու արյունառուշտ, ագահ ու աչքածակ, տգետ ու ամբարտավան մարդիկ, մեծարված ու գնահատված են խելոքներն ու իմաստունները, վեր է հանված խոհեմությունը, համեստությունը և մարդկային այլ առաքինությունները։

Ինչպես նշվեց վերևում, Հայաստանում մեծ տարածում է ունեցել Խիկարի «Պատմությունը», իսկ նրա հերոսը վայելել է լայն ժողովրդականություն ու համբավ։ Խելոք մարդուն բնորոշելու համար մեզանում հաճախ ասել են՝ «Խիկարի պես իմաստուն է», «Խիկարի խելքն ունի», «Խիկարի պես խելացի խրատներ կուտա», «Թե հերը Սողոմոն իմաստունն է, տղեն Խիկարի խելքն ունի» և այլն[2]։

Ըստ այսմ էլ Խիկարի խրատները դարձել են ժողովրդական ասածներ ու ասացվածքներ և իբրև այդպիսիք մտել հասարակական շրջանառության մեջ։

Վաղարշապատի, Աշտարակի, Օշականի, Շիրակի, Ախալցխայի, Թիֆլիսի, Զանգեզուրի, Ղարաբաղի, Պոլսի, Ալաշկերտի, Վանի, Մոկսի, Բուլանխի, Դիարբեքիրի հայերի կողմից ասված Խիկարյան այդպիսի ասած-ասացվածքներից են հետևյալները և բազմաթիվ ուրիշ նմանները։

---

[1] Հ. Հակովբոս Վ. Տաշյան, Մատենագրական մանր ուսումնասիրություններ, մասն երկրորդ, Վիեննա, 1901, էջ 123—128։

[2] Ստ. Մալխասյանց, Հայերեն բացատրական բառարան, հատոր Բ, Երևան, 1944, էջ 263 և այլուր։

«Աղքատին աղան օձ կերավ, ասին՝ անօթի էր. հարուստին աղան կերավ, ասին՝ դեղ էր» կամ՝ «Հարուստ մարդը օձ կերավ, ասին՝ դեղ ա, աղքատը կերավ, ասին՝ սոված ա», ՀԱ,6 (ըստ Խիկարի՝ «Մեծատան որդին թէ օձ ուտէ՝ կասեն թէ վասն բժշկութեան կերաւ և թէ աղքատն ուտէ՝ կասեն թէ սովալլուկ մեռանելոյն կերաւ», ԳՊ, 102)[1]:

«Իմաստունի հետ քար քաշե, հիմարի հետ փլավ մի ուտի» կամ՝ «Խելոք մարդու հետ քար կրելը լավ է, քանց գժի հետ փլավ ուտելը», ՀԱ, 58 (ըստ Խիկարի՝ «Լաւ է իմաստուն մարդոյն հետ քար կրել, քան զանզգամին հետ նիստ՝ որ ասեն՝ թէ եկու ի վեր», ԳՊ, 94):

«Ինչ որ ասես, էն կը լսես», ՀԱ, 91 (ըստ Խիկարի՝ «Մի ասեր և մի լսեր», ԳՊ, 108):

«Աչքածակի աչքը մենակ հողով կը կշտանա», ՀԱ, 69 (ըստ Խիկարի՝ «Աչք մարդոյ ագահ է, ոչ կշտանայ զանձով՝ մինչև լցի հողով», ԳՊ, 96):

«Վարը նստի, որ վերևը քեզ տեղ տան», ՀԱ, 55 (ըստ Խիկարի՝ «Ի վայր նիստ՝ որ ասեն՝ թէ եկու ի վեր», ԳՊ, 94):

«Արին թափողը՝ արնով էլ կէթա», ՀԱ, 93 (ըստ Խիկարի՝ «Մի հեղուր զարիւն մարդոյ, զի մի այլքն հեղձցեն զարիւն քո», ԳՊ, 94):

Այսպես և շատ ուրիշներ:

Կարելի է հիշատակել ուրիշ գրավոր հուշարձաններ ևս, որոնք նյութ են տվել հայկական առածներին, սակայն դրանց դերը տվյալ դեպքում երկրորդական է, ուստի բավարարվենք բերվածով:

Քննության առարկա գրավոր ասույթների կամ աֆորիզմների ժողովրդականացման գործում, բացի այդ ասույթները կամ աֆորիզմները պարունակող երկերի հայերեն թարգմանություններից, զգալի դեր են խաղացել նաև տարբեր դարերի հայ պատմիչներն ու գրողները: Իրենց գրվածքներում զանազան առիթներով մեջ բերելով հիշյալ ասույթները կամ աֆորիզմները, նրանք դրանով իսկ նպաստել են վերջիններիս տարածմանը՝ դառնալով յուրահատուկ միջնորդներ:

Հայ պատմիչների ու գրողների պատմա-հայրենասիրական ու այլ տիպի գործերի ընդհանուր բովանդակության հետ այդ ասույթները կամ աֆորիզմները գրագետ մարդկանց միջոցով թափանցել են ժողովրդի մեջ և ստեղծագործաբար յուրացվել նրա կողմից: Այսպես, օրինակ.

Հին կտակարանի՝ «Որ փորէ խորխորատ ընկերի իւրում՝ ինք լցցէ զնա» հայտնի առակը գտնում ենք՝ Եղիշեի, Դրասխանակերտցու և Ուխտանեսի մոտ («Նոցա էր փորել զխորխորատ, դուք ընդէ՞ր լցէք յառաջագոյն», «Եւ այսպէս գուբն զոր եւ փորեաց եւ պեղեաց Հասան, ի նոյն ընկլուզաւ զոր եւ գործեաց», «Գուբն զոր փորեաց եւ պեղեաց՝ ինքն անկցի ի խորխորատն» ձևերով)[2]:

Հայ ժողովրդի մեջ այս առակը, ինչպես նշվեց վերևում, տարածված է՝ «Ուրիշի հոր փորողը, ինքը կընկնի մեջը» և այլ նմանակներով[3]:

Խիկարի ոչ պակաս հայտնի՝ «Որդեակ, եղեր ինձ որպես կացին՝ որ կտրէր

---

[1] «Գիրք պատմութեան որ կոչի Պղնձէ քաղաք և Բանք խրատականք և օգտակարք Խիկարայ իմաստնոյ, և այլ բանք պիտանիք», Կ. Պոլիս, 1792:

[2] Եղիշէ, Վենետիկ, 1889, 42, Յովհ. կթղ., Երուսաղեմ, 1867, 241, Ուխտանէս, Էջմիածին, 1871, 74:

[3] «Հայկական առածներ», էջ 10:

զծառն: Ասէ ծառն. եթէ յինէն չէիր՝ ոչ յաղթէիր դու» *խրատը, Վարդան Այգեկցու առակներից մեկի մեջ օգտագործված է հետևյալ ձևով. «Հիւսունք մտան ի մայրին եւ սկսան կոտորել զծառ եւ զոստս. եւ նոքա հառաչելով ասեն՝ Զի՞նչ է այս զոր գործեն ընդ մեզ: Եւ նոճին ասէ. Վա՜յ է մեզ, ով եղբարք, զի ի միջանէ (է) որ կորէ զմեզ. զի կոթն ի մայրայս է»*[1]:

*Հայ ժողովրդի մեջ Խիկարյան վերաբերյալ խրատը գործածվել է՝ «Ծառը գանգատ գնաց աստծու մոտ կացնիցը որ իրան կտրում ա, ասեց՝ կոթը քեզանից ա», «Ծառը կացնի կոթ չի տար, իրան մահ ու մեռ չըկար» և այլ նմանակներով*[2]:

*Այսպես և շատ ուրիշներ:*

*Բերված փաստերը ակնառու կերպով ցույց են տալիս աստվածաշնչյան և մյուս գրավոր աղբյուրների ու մեր բազմաթիվ ժողովրդական առած-ասացվածքների միջև գոյություն ունեցող նմանությունները:*

*Ճիշտ չէր լինի կարծել, թե այդ բոլոր նմանությունները այն սովորական զուգադիպություններից են, որպիսիք հաճախ հանդիպում են և՛ գրականության և՛ մանավանդ ժողովրդական բանահյուսության մեջ: Նմանօրինակ առանձին զուգադիպությունների հնարավորությունն, իհարկե, չի կարելի բացառել: Սակայն տվյալ դեպքում մենք գործ ունենք ոչ թե այդպիսի մոտավոր, սովորական զուգադիպությունների, այլ, հիմնականում, բառացի ու տեքստուալ համընկնումների ու նույնությունների հետ:*

*Աստվածաշունչը, անտիկ աշխարհի իմաստասերների «Բանքերը» և Խիկարի «Պատմությունը» միջազգային բնույթի այն գրավոր սկզբնաղբյուրներն են, որոնց ազդեցությունը դիտված է թե՛ արևելյան և թե՛ եվրոպական ժողովուրդների ավանդական բանահյուսության և բառ ու բանի վրա:*

*Ուրիշ ժողովուրդների հետ միասին հայ ժողովուրդը ևս յուրացրել է քննության առարկա գրավոր հուշարձանների միջոցով իրեն հասած հին եբրայեցիների և հնդարյան մի երկու ուրիշ ազգերի (ասորիներ, հույներ) թևավոր խոսքերն ու պատկերավոր արտահայտությունները և ստեղծագործաբար վերամշակելով դրանք մտցրել է իր բնաշխարհիկ առածների ու ասացվածքների շարքը:*

*Այդ խոսքերի ու արտահայտությունների մեջ նա գտել է իրեն հուզող հասարակական, բարոյական, կենցաղային, կրոնական շատ հարցերի պատասխանը, արտահայտված ժողովրդական մտածողությանն հատուկ հարազատ ու հասկանալի ձևերով:*

---

[1] Ն. Մառ, Ժողովածուք առակաց Վարդանայ, հատ. Բ, 123:

[2] «Հայկական առածանի», էջ 10: